Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 18—19 (49-50)

ՀԽՍՀ ԺԿԽ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ



№ 18—19 (49-50)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1938

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԷՋ



# ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՔՍԱՆԱՄՅԱԿԸ

Այս տարի, հոկտեմբերի 29-ին լրանում է Համամիութենական Լենինյան Կոմունիստական Երիտասարդական Միության կազմակերպման քսանամյակը: Կոմերիտմիության առաջին համագումարը, որը ձևակերպեց կոմունիստական երիտասարդական միության հիմնադրումը, տեղի ունեցավ Մոսկվայում 1918 թվի հոկտեմբերի 29-ից— նոյեմբերի 4-ը: Այդ համագումարին նախորդել է բոլշևիկյան կուսակցության խոշոր կազմակերպչական և պրոպագանդիստական աշխատանքը՝ երիտասարդության մեջ և նրան ակտիվ մասնակից անելը՝ հեղափոխական պայքարին:

Բոլշևիկյան կուսակցությունը և նրա մեծ առաջնորդները Լենինը և Ստալինը միշտ էլ մեծ ուշադրություն են դարձրել աշխատավոր երիտասարդության հեղափոխական

դաստիարակությանը: Արդեն նախահոկտեմբերյան օրերին «Պրավդա»-ն իր էջերում լայն պրոպագանդա և ագիտացիա էր տանում յերիտասարդության մեջ՝ քըննարկելով նրա կազմակերպման հարցերը: Կուսակցությունը իր ժամանակին ջախջախեց մենշևիկների փորձերը՝ տիրանալու յերիտասարդության շարժմանը և կտրելու նրան յերկրի քաղաքական կյանքից:

Տեղական կուսակցական կազմակերպությունների օգնությամբ և նախաձեռնությամբ 1917 թվի մարտ—ապրիլ ամիսներից սկսած Մոսկվայում և Լենինգրադում հիմնադրվում են բանվոր յերիտասարդության առաջին միությունները: Յերիտասարդական միությունների քանակը արագորեն աճում է նաև մյուս արդյունաբերական կենտրոններում:

Կուսակցության 6-րդ համագումարը, վորը անց է կացվում ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ, կուսակցությանը ուղղեց դեպի զինված ապստամբություն, դեպի սոցիալիստական հեղափոխությունը: Այդ համագումարը վորոշումներ ընդունեց, վորոնք հսկայական դեր խաղացին



լենինյան - ստալինյան կոմյերիտմիության ստեղծման և զարգացման գործում: Համագումարի բանաձևում ասված է.—

«Պրոլետարիատի կուսակցությունը իր հերթին, հաշիվ է տալիս իրեն այն խոշոր նշանակության վերաբերյալ, վոր ունի բանվոր յերիտասարդությունը բանվորական ամբողջ շարժման համար:

Այդ պատճառով համագումարը անհրաժեշտ է համարում, վորպեսզի կուսակցական կազմակերպությունները տեղերում ամենալուրջ ուշադրություն դարձնեն յերիտասարդության կազմակերպման գործին... Ներկայումս, յերբ բանվոր դասակարգի պայքարն անցնում է սոցիալիզմի համար անմիջական պայքարի փուլին, համագումարը բանվոր յերիտասարդության դասակարգային սոցիալիստական կազմակերպության գործակցությունը (հիմնումը) համարում է մոմենտի անհետաձգելի հարցերից մեկը և հանձնարարում է կուսակցական կազմակերպություններին ի պարտականություն, մաքսիմում ուշադրություն դարձնել այդ աշխատանքին»[1]:

---

[1]) «ВКП(б) в резолюциях» стр. 268.

Կուսակցության 6-րդ համագումարի վորոշումների հիման վրա յերիտասարդական միությունները ավելի լայն ծավալեցին իրենց աշխատանքը: Հեղափոխական շարժման աճման հետ մեկտեղ, աճեց նաև բանվորների յերիտասարդ սերնդի ակտիվությունը:

Վ. Ի. Լենինը նշելով 1917 թվի հոկտեմբերյան զինված ապստամբության պլանը, այսպիսի խնդիր դրեց.—

«Առանձնացնել ամենավճռական տարրերին (մեր «հարվածայիններին» և բանվոր յերիտասարդությանը, և համապատասխան նավաստիներին) վոչ մեծ ջոկատներում՝ նրանց կողմից բոլոր կարևորագույն պոստերը գրավելու և նրանց մասնակցության համար ամենուրեք, բոլոր կարևորագույն գործողությունների մեջ...»[1]:

Բանվոր յերիտասարդությունն այդ խնդիրը կատարեց պատվով: Հոկտեմբերյան հեղափոխության ժամանակ Կարմիր Գվար-

[1] В. И. Ленин. Собр. соч. Том. XXI, стр. 320.



դիայի շարքերը նշանակելի չափով լրացված եյին յերիտասարդ պրոլետարներով: Պայքարի բոլոր կարևորագույն մասերում յերիտասարդությունը կռվում եր բացառիկ հերոսությամբ՝ սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար:

Յերիտասարդության շարժումը հատկապես լայն թափ է ստանում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության հաղթանակից հետո: Յերիտասարդական կազմակերպություններ են ստեղծվում յերկրի բազմաթիվ քաղաքներում, աճում է նրանց քանակը նաև գյուղերում:

Արդեն Ռ.Կ.ՅԵ.Մ առաջին համագումարին, 176 պատգամավորները ներկայացնում եյին կազմակերպված յերիտասարդների 22.100 մարդ: Այդ համագումարը քաղաքականապես և կազմակերպչորեն ձևավորեց յերիտասարդության շարժումը, ստեղծելով Ռուսաստանի կոմունիստական յերիտասարդության միությունը և նրա նպատակը դնելով յերիտասարդության մեջ կոմունիզմի գաղափարների տարա-

ծումը և նրա ներգրավումը խորհրդային յերկրի ակտիվ շինարարության մեջ։

Կոմյերիտմիության առաջին համագումարի աշխատանքներն անցան բոլշևիկյան կուսակցության ղեկավարության ներքո։ Միության խնդիրների մասին համագումարի պատվիրակությունը զրույց ունեցավ Վ. Ի. Լենինի հետ։ Համագումարի ավարտումից հետո կուսակցության Կենտրոնական կոմիտեն, նամակ ուղղեց կուսակցական բոլոր կազմակերպություններին, պարտավորեցնելով նրանց՝ գործի դնել բոլոր ջանքերը,—չխախտելով կոմյերիտմիության նախաձեռնությունը,— վորպեսզի Ռ.Կ.ՑԵ.Մ-ը կարողանա ծավալել լայն և արդյունավետ գործունեություն։

Կուսակցության կոնկրետ ու պարզորոշ ղեկավարությունը յերիտասարդական կազմակերպություններին՝ յերաշխիք դարձավ կոմյերիտմիության հաջող աճման, նրա շարքերում յերիտասարդության լավագույն մասը ներգրավելու համար։



Կոմյերիտմիությունը աչքի ընկնող դեր խաղաց յերիտասարդ Խորհրդային Հանրա-



պետությունը սպիտակ գվարդիական բանդաների և արտասահմանյան ինտերվենտների արշավանքներից պաշտպանելու գործում։ 1919 թվի ահավոր որերին, յերբ հրջախակման կրակե ողակը ամեն կողմից սեղմում եր մեր սոցիալիստական հայրենիքը, անցկացվեց կոմյերիտականների առաջին համառուսական մոբիլիզացիան արևելյան ճակատում, ընդդեմ Կոլչակի։ Յերեք հազար կոմյերիտականներ կրծքով կանգնեցին պաշտպանելու Հոկտեմբերի նվաճումները։

Կոմյերիտականների յերկրորդ համառուսական մոբիլիզացիան հարավային ճակատին տվեց 10 հազար մարդ։ Յերրորդը— ընդդեմ Պիլսուդսկու— արևմտյան ճակատին տվեց 3 հազար մարդ։

Համառուսական յերեք մոբիլիզացիաներից բացի, անց են կացվել նաև մի շարք մասնակի մոբիլիզացիաներ։ Կոմյերիտական առանձին կազմակերպություններ ամբողջապես մեկնում եյին ճակատ։ Տասնյակ հազար կոմյերիտականներ կռվում եյին բոլոր ճակատներում, հերոսաբար պաշտպանելով իրենց սոցիալիստական հայ-

րենիքը: Ցեվ այսպես, քաղաքացիական պատերազմների բովում, ինտերվենտներին ջախջախելու համար յերկրի բոլոր ուժերի գերագույն լարման պայմաններում, կոփվեց լենինյան-ստալինյան կոմյերիտմիությունը:

Քաղաքացիական պատերազմների շրջանում կոմյերիտմիության հերոսական աշխատանքը ըստ արժանվույն գնահատվեց Խորհրդային կառավարության կողմից: Ի հավերժացումն քաղաքացիական պատերազմի ճակատներում 1919-20 թվերին մատուցած մարտական ծառայության, լենինյան-ստալինյան կոմյերիտմիությունը պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով:

Քաղաքացիական պատերազմների ավարտումից վո՛չ շատ առաջ, 1920 թվի հոկտեմբերին, կայացավ Ռ.Կ.Ց.Ե.Մ յերրորդ համագումարը: Կոմյերիտմիության I և III համագումարների ժամանակամիջոցում կոմյերիտմիությունը աճեց մինչև 400 հազար մարդ: Այդ համագումարը խոշորագույն նշանակություն ունեցավ յերիտասարդության կոմունիստական շարժման հետագա ամբողջ զարգացման համար: III համագումարին ճառով հանդես



յեկավ Վ. Ի. ԼԵՆԻՆԸ, վորը ձևակերպեց կոմյերիտմիության առաջ կանգնած գլխավոր խնդիրները: Վլադիմիր Իլյիչը մատնանշեց.

«... Ընդհանրապես յերիտասարդության
և յերիտասարդության կոմունիստական
միությունների և մասնավորապես այլ
կազմակերպությունների յերիտասարդու-
թյան խնդիրները կարելի յե ար-
տահայտել մի բառով, խնդիրը կայանում
է նրանում, վոր սովորել»[1]):

Այնուհետև Իլյիչը ընդգծել է.—

«Յերիտասարդական միության անդամ լինել նշանակում է գործը տանել այնպես, վորպեսզի իր աշխատանքը, իր ուժերը նվիրել ընդհանուր գործին: Ահա դրա մեջ է կայանում կոմունիստական դաստիարակությունը: Միայն այդպիսի աշխատանքի մեջ յերիտասարդ տղան կամ աղջիկն իսկական կոմունիստ է դառնում: Միայն այն դեպքում են նրանք կոմունիստներ դառնում, յեթե նրանք այդ աշ-

1) **В. И. Ленин, И. В. Сталин** «О молодежи», стр. 133—134. Партиздат. 1936.

միութենական բոլոր ոլորտներում:

Ի կատարումն կուսակցության 10-րդ համագումարի վորոշումների՝ կուսակցության և կոմսոմոլի ամուր կապի և համատեղ աշխատանքի մասին, անցկացվեց մերձեցման շաբաթ Ռ.Կ.Կ.-ի և Ռ. Կ. ՅԵՄ-ի միջև: Այդ շաբաթվա խնդիրների մեջ մտնում եր.

«Սերտ, որգանական կապի հաստատումը Ռ.Կ.Կ.-ի և Ռ.Կ.ՅԵ.Մ-ի միջև, կուսակցության կողմից միությանը գաղափարական և նյութական ոգնության կազմակերպումը, անցկացնելով Ռ.Կ.Կ_ի փաստական պատասխանատվությունը՝ Ռ.Կ.ՅԵՄ կազմակերպությունների աշխատանքների մասին»:

Յերկրի՝ նոր տնտեսական քաղաքականության անցնելու կապակցությամբ կոմսոմոլի առաջ իր ամբողջ լրջությամբ կանգնեցին՝ իր շարքերի կազմակերպական ամրապնդման և նոր պայմաններում աշխատանքին համարմարվելու հարցերը: Առաջին պլանի վրա դըրվեցին յերիտասարդության աշխատանքի, կենցաղի և կրթության հարցերը:

Այնուհանդերձ միությունը չկարողացավ միանգամից վերակառուցվել՝ նոր պայման-



ներին համապատասխան: Ահա նվազեց կոմյերիտմիության անդամների քանակը— 1921 թ. 415 հազարից 1922 թվի վերջում իջավ մինչև 260 հազարի: Միաժամանակ թուլացավ Ռ.Կ.ՅԵ.Մ-ի ազդեցությունը բանվոր յերիտասարդության վրա:

Ահա թե ինչու կոմյերիտմիության վերաբերյալ հարցը մեծ տեղ բռնեց կուսակցության XI համագումարի աշխատանքներում, վորը տեղի ունեցավ 1922 թվի ապրիլին: Այդ համագումարում Լենինը կուսակցության առաջ խնդիր դրեց.— Պայքար ծավալել՝ հաղթահարելու համար ժողովրդական տնտեսության մեջ կապիտալիստական տարրերին, ամրապնդելու համար բանվոր դասակարգի դաշինքը աշխատավոր գյուղացիության հետ, մերձեցում կազմակերպելու համար սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության միջև:

Ռ.Կ.ՅԵ.Մ_ի մասին հարցի վերաբերյալ կուսակցության 11_րդ համագումարը տվեց հատուկ դիրքավորում և գործնական ցուցմունքներ՝ միության աշխատանքների վերակառուցման մասին: Նրա վորոշումներում ասված է.—

«Բ.Կ.ՅԵ.Մ.-ը, հանդիսանալով կոմունիստական դաստիարակության մասսայական կազմակերպություն, ծառայում է կուսակցության համար՝ վորպես հզոր զենք բանվորական և գյուղացիական յերիտասարդության լայն շերտերի վրա կոմունիստական ներգործության և ազդեցության համար: Բ.Կ.ՅԵ.Մ.-ը միենույն ժամանակ, դաստիարակելով իր շարքերում բանվոր յերիտասարդության ամենից ավելի գիտակից և հեղափոխական մասը, ապահովում է կուսակցության առաջ և անընդհատ աճը՝ պրոլետարիատի առավել ակտիվ միջնախավի հաշվին — բանվոր յերիտասարդությունը մտնելով կուսակցության մեջ միության միջոցով, որտեղ պատրաստված է՝ հեղափոխական գործում աշխատանքի»[1]):

Կուսակցության 11-րդ համագումարը սահմանեց, վոր «մինչ 20 տարեկան վողջ յերիտասարդությունը կուսակցության մեջ է մտնում բացառապես միայն Բ.Կ.ՅԵ.Մ-ի միջոցով, բացառությամբ կարմիր բանա-

1) «ВКП(б) в резолюциях», ч. 1-я, стр. 452.



կայինների»: Համագումարը նմանապես վորոշում ընդունեց՝ ձեռնարկություններում նորմալ տոկոսի բանվոր-դեռահասներ հատկացնելու մասին, պայմաններ սահմանելու մասին՝ նրանց աշխատանքի պաշտպանության բոլոր նորմաները անհրաժեշտաբար անցկացնելու համար, բանվոր յերիտասարդության աշխատանքի վերակառուցման մասին՝ յենթարկելով այն ուսման նպատակներին և վորակավորմանը:

Մանր բուրժուական տրամադրությունների քայքայիչ ազդեցությունը և հակահեղափոխական ընդհատակյա խմբակների փորձերը՝ յերիտասարդության մեջ ազդեցություն շահելու, կոմյերիտմիությունից հաստատաբար պահանջում եյին՝ վճռական պայքար տանելու թշնամական տարրերի դեմ և յեռանդուն կուլտուր-քաղաքական աշխատանք՝ հարմարվելու յերիտասարդության հարցասիրություններին: Զինված՝ կուսակցության 11-րդ համագումարի վորոշումներով, կոմյերիտմիությունը, կուսակցության ղեկավարությամբ շտկվեց, իր շարքերը ներգրավեց տասնյակ հազարավոր նոր անդամներ, ամրացրեց իր պրոլետարական միջուկը:

Միության անդամների կազմը գրեթե կիսով չափ վերանորոգված՝ կոմյերիտմիության առաջ նոր խնդիրներ շարժվեցին: Հարկավոր եր ավելի շատ կենտրոնացնել կոմյերիտական կազմակերպությունների ուժերը՝ դաստիարակելու ակտիվը, ընդարձակելու՝ մասսայական – քաղաքական և կուլտուրական աշխատանքը յերիտասարդության մեջ: Այս հարցերի մշակմամբ զբաղվեց Ռ.Կ.Ց.Ե.Մ. V համագումարը, որը կայացավ 1922 թվի հոկտեմբերին: Համագումարի օրակարգում դրված եյին՝ նոր տնտեսական քաղաքականության պայմաններում յերիտասարդության կոմունիստական դաստիարակության մասին, գյուղում աշխատելու մասին և բանվոր յերիտասարդության կրթության վերաբերվող հարցերը:

Կոմյերիտմիության 5-րդ համագումարը սկիզբ դրեց մանուկների կոմունիստական շարժմանը, ձևավորեց պատանի պիոներների կազմակերպությունը: Հենց այդ համագումարում ել ընդունվեց կոմյերիտմիության շեֆությունը Ռազմա- Ծովային նավատորմի վրա:



Ռ.Կ.Ց.Ե.Մ. V համագումարի ողջույնի մեջ Վլադիմիր Իլյիչը գրում եր.—

«Թանկագի՛ն բարեկամներ: Շատ ցավում եմ, որ չեմ կարողանում անձամբ ողջունել ձեզ: Ձեր 5-րդ համագումարի աշխատանքներին ցանկանում եմ ամենայն հաջողություններ: Համոզված եմ, որ յերիտասարդությունը կարող կլինի այնպե՛ս արագ զարգանալ, որ համաշխարհային հեղափոխության հետագա մոմենտի հասունացման ժամանակ կատարելապես հասած կլինի խնդրի վսեմության»[1]):

Այդ Լենինի վերջին ողջույնն եր կոմյերիտմիությանը:

Կուսակցական կազմակերպությունների առաջ հատկապես այդ շրջանում սուր խնդիր եր կանգնել՝ նախապատրաստելու «կոմունիստական նոր սերունդին, որակավորված և դասակարգայնորեն գիտակից բանվորներին, ինչպես և Խորհրդային հանրապետու-

---

1) **В. И. Ленин, И. В. Сталин** «О молодежи», стр. 159.

թյան շինարարության մեջ չահագրգռված դյուղացիներին»²):

Երիտասարդության մեջ կուսակցության աշխատանքի վիթխարի նշանակությունը նշել է ընկեր Ստալինը Կ. Կ.-ի հաշվետու զեկուցման մեջ, 12-րդ համագումարին: Ընկեր Ստալինն ասում էր.—

«...Երրորդ չափիչ փոկը, որ դասակարգին կապակցում է կուսակցության հետ, — այդ երիտասարդության միությունններն են: Հազիվ թե հարկ լինի ապացուցել երիտասարդների միության և ընդհանրապես երիտասարդության ամբողջ վիթխարի նշանակությունը՝ մեր կուսակցության զարգացման գործում: Թվերը, որ կան մեզ մոտ, խոսում են այն մասին, որ անցյալ տարում, 11-րդ համագումարին, մեզ մոտ երիտասարդության միության կազմում հաշվվում էր ոչ պակաս 400·000 անդամներ: Այնուհետև, 1922 թվի միջներքում, երբ շտատների կրճատում էր գնում, երբ բրոնյան դեռևս անբավարար էր իրագործվում, երբ երիտասարդության միությունը դեռ ի վիճակի չէր ընտելա-

²) «ВКП(б) в резолюциях», ч. 1-я, стр. 533.



նալ նոր պայմաններին, անդամների թիվը ընկավ մինչև 200·000-ի: Այժմ, հաս- կարծես անցյալ տարվա աշնանից սկսած, մենք, երիտասարդական միության հսկայական աճում ունենք, Միության մեջ հաշվվում են 400 հազարից ոչ պակաս անդամներ: Ամենից ուրախալին — այդ այն է, որ երիտասարդության միությունները աճում են առաջին հերթին ի հաշիվ բանվոր երիտասարդության: Նրանց աճը ամենից առաջ ընկնում է այն շրջաններին, որտեղ բարձրանում է արդյունաբերությունը»¹):

Կուսակցության 12-րդ համագումարը կուսակազմակերպությունների առաջ դրեց՝ երիտասարդության մեջ կուսաշխատանքների անհետաձգելի խնդիրը: Լուրջ ուշադրություն հատկացվեց՝ բանվոր դասակարգի նոր սերունդին հաղորդելու մեր կուսակցության հեղափոխական պայքարի հարուստ փորձը: Համագումարի բանաձևում ասված է.—

«Կուսակցության առաջ ամենից առաջ կանգնած է խնդիր — տալ նոր մատաղ սերունդին հեղափոխական պայքարի ողջ փորձը և հաջորդաբար ծանոթացնել նը-

¹) **И. Сталин** «О комсомоле», стр. 7—8. «Молодая гвардия». 1937.

***

Ժողովրդական տնտեսության վերականգնման համար մղվող պայքարի տարիները բերեցին յերկրին նշանակալից հաջողություններ: Բարձրացավ բանվորների և գյուղացիների քաղաքական ակտիվությունը: Յերիտասարդությունը մեծ յեռանդով մասնակցեց սոցիալիստական շինարարությանը:

Այնուհանդերձ, ավերմունքի հետևանքները դեռևս իրենց զգալ եյին տալիս: Տնտեսական դժվարությունները օգտագործում եյին յերկրի անարգ տրոցկիստները, վորոնք փորձում եյին խախտել կուսակցական կարգապահությունը և կուսակցության համախմբվածությունը: Տրոցկիստները ցանկանում եյին կործանել կուսապարատը, հակադրել կուսակցական մասսաները — կուսապարատին, իսկ յերիտասարդությունը — բոլշևիկյան հին կադրերին: Վորպեսզի գրավի ուսանող յերիտասարդության մասնակցությունը՝ որեր բանդիտ Տրոցկին շողոքորթում եր նրան՝ կոչելով «կուսակցության ճշտագույն բարոմետր»:

Կուսակցությունը հակահարված տվեց տրոցկիստների գարշելի փորձերին և սերտ համախմբվեց լենինյան-ստալինյան Կ. Կ.-ի



շուրջը: Յերիտասարդությունն էլ ավելի կոփվեց հակահեղափոխական տրոցկիզմի դեմ կուսակցության գլխավոր գծի համար մղված պայքարում:

Հակահեղափոխական տրոցկիզմի դեմ մղվող պայքարի պայմաններում ավելի մեծ նշանակություն ստացան յերիտասարդության գաղափարական-քաղաքական դաստիարակության հարցերը՝ նրա կողմից յուրացնելու բոլշևիկյան կուսակցության փորձը և տրադիցիաները: Կոմյերիտմիությանն անհրաժեշտ եր գլուխ բերել կուսակցության պատմության, նրա ծրագրի, ստրատեգիայի և տակտիկայի, նրա կազմակերպական սկզբունքների սիստեմատիկ ուսումնասիրությունը: Կոմյերիտմիության առաջ խնդիր եր դրված՝ տիրապետել Լենինի կողմից կուսակցությանը թողնված գաղափարական ժառանգությունը: Կոմյերիտմիությունը պարտավոր եր գիտենալ կուսակցության մղած պայքարը ընդդեմ օպորտունիզմի, վորի հետ ունեցած վեճ ու կռվի մեջ աճել ու կոփվել ե նա:

Բանվորների և գյուղացիների անձնազոհ աշխատանքը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ տվեց իր պտուղնե-

րը: 1924–25 թ. թ. ձեռք բերվեցին նոր փայլուն հաղթանակներ տնտեսական ֆրոնտում: Հավատարիմ՝ լենինյան-ստալինյան կուսակցության պատվիրաններին, յերիտասարդությունը գնաց ԽՍՀՄ տնտեսական հզորության վերականգնելու համար պայքարողների առաջին շարքերում:

Յերկրի ինդուստրացման բոլշևիկյան կուրսը կատաղի դիմադրության հանդիպեց կապիտալիստական տարրերի և սոցիալիզմի բոլոր թշնամիների կողմից: Տրոցկիստները և զինովևականները փորձում էին յերիտասարդությունը պոկել կուսակցությունից: 14-րդ համագումարի նախապատրաստման ժամանակաշրջանում — կայացած 1925 թ. դեկտեմբերի 18—31-ը — տրոցկիստական — զինովյևյական վոհմակը ցանկանում էր ոգտագործել Լենինգրադի կոմյերիտական կազմակերպությունը՝ կուսակցության դեմ պայքարելու համար: Կուսակցությունը և կոմյերիտմիությունը լիկվիդացիայի յենթարկեցին տրոցկիստական-զինովյևյական բանդայի՝ կոմյերիտմիությունը կուսակցությանը հակադրելու փորձերը:

Կուսակցության 14-րդ համագումարը



ջախջախեց զինովյևյական ոպոզիցիան: Համագումարը վորոշում կայացրեց ԽՍՀՄ-ի ինդուստրացման վերաբերյալ: Համագումարն իր բանաձևում արձանագրեց.—

«Տնտեսական շինարարության բնագավառում համագումարը յելնում է նրանից, վոր մեր յերկիրը, պրոլետարիատի դիկտատուրայի յերկիրը, ունի «բոլոր անհրաժեշտը — լիակատար սոցիալիստական հասարակություն կառուցելու համար»: (Լենին): Համագումարը գտնում է, վոր պայքարը սոցիալիստական շինարարության հաղթանակի համար ԽՍՀՄ-ում հանդիսանում է մեր կուսակցության հիմնական խնդիրը»[1]):

Կոմյերիտմիության շարքերում 1926 թվին արդեն կային. միության 1750 հազար անդամներ: Կոմյերիտմիության 6 — 7-րդ համագումարի ժամանակամիջոցում ընդունվեցին ավելի քան մեկ միլիոն նոր անդամներ: Նշանակալի շափով ավելացավ միության կողմից գյուղացիական յերիտասարդության ընդգրկումը:

Կոմյերիտմիության 7-րդ համագումարի

———

1) ВКП(б) в резолюциях», ч. 2-я, стр. 49.

նախօրյակին ընկեր Ստալինը մի շարք ցուցումներ տվեց երիտասարդության միության աշխատանքների մասին: Պատասխանելով «Կոմսոմոլսկայա Պրավդա»-յի խմբագրության առաջադրած հարցերին ընկեր Ստալինը ասաց.—

«Կոմերիտմիությունը ձևականորեն հանդիսանում է անկուսակցական կազմակերպություն: Բայց նա դրա հետ մեկտեղ կոմունիստական կազմակերպություն է: Այդ նշանակում է, որ ձևականորեն հանդիսանալով բանվորների և գյուղացիների անկուսակցական կազմակերպությունը, դրա հետ մեկտեղ կոմերիտմիությունը պարտավոր է աշխատել մեր կուսակցության ղեկավարության ներքո: Ապահովել երիտասարդության վստահությունը մեր կուսակցության նկատմամբ, ապահովել մեր կուսակցության ղեկավարությունը Կոմերիտմիության նկատմամբ— այսպիսին է խնդիրը: Կոմերիտականը պետք հիշի, որ կուսակցության ղեկավարության ապահովումը ամենագլխավորն ու ամենակարևորն է կոմերիտմիության բոլոր աշխատանքներում: Կոմերիտականը պետք



հիշի, որ առանց այդպիսի ղեկավարության կոմերիտմիությունը անկարող է կատարել իր հիմնական խնդիրը — բանվոր-գյուղացիական երիտասարդության դաստիարակությունը պրոլետարիատի դիկտատուրայի և կոմունիզմի ոգով»[1]):

Նույն այդ պատասխանում ընկեր Ստալինը տվեց կարևորագույն ցուցումներ՝ կոմերիտմիության միջազգային խնդիրների վերաբերյալ: Ընկեր Ստալինը ասաց.—

«Ինտերնացիոնալիզմը հանդիսանում է այն հիմնական գաղափարը— ներծծված կոմերիտմիության աշխատանքում: Դրանում է նրա ուժը: Դրանում է նրա հզորությունը: Հարկավոր է, որպեսզի ինտերնացիոնալիզմի ոգին միշտ սավառնի կոմերիտմիության վրա»[1]):

Մեր սքանչելի կոմերիտմիությունը սրբազան կերպով կատարում է ընկեր Ստալինի այդ ցուցումները, հանդիսանալով երիտասարդության Կոմունիստական Ինտերնացիոնալի առաջատար սեկցիան:

1926 թվի հունվարին ընկեր Ստալինը տվեց կոմերիտմիության դերի և նշանակու-

1) В. И. Ленин, И. В. Сталин, «О молодежи», стр. 179. Партиздат. 1936.

թյան ապառիկ ընդունումը, պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում.—

«Այդ բանվոր և գյուղացիական երիտասարդության մասսայական կազմակերպությունն է, անկուսակցական, սակայն կուսակցությանը հարող կազմակերպություն: Նա ունի իր խնդիրները՝ օգնելու կուսակցությանը՝ երիտասարդ սերնդին սոցիալիզմի ոգով դաստիարակելու գործում: Նա տալիս է պրոլետարիատի մնացած բոլոր մասսայական կազմակերպություններին երիտասարդ ռեզերվներ՝ կառավարման բոլոր ճյուղերին: Երիտասարդության միությունը հատուկ նշանակություն ձեռք բերեց պրոլետարիատի դիկտատուրայի ամրանալուց հետո, պրոլետարիատի լայն կուլտուրական և դաստիարակչական աշխատանքի ժամանակաշրջանում»[1]:

Ղեկավարվելով ընկեր Ստալինի այդ ցուցումներով, կոմերիտմիությունը լենինյան աշխատանք ծավալեց երկրի սոցիալիստական ինդուստրացման համար մղվող պայքարի շրջանում: Ձեռնարկությունների և

1) В. И. Ленин, И. В. Сталин, «О молодежи», стр. 185. Партиздат. 1936.



հանքահորերի երիտասարդության բրիգադները դարձան աշխատանքի սոցիալիստական մեթոդների նախամարտիկներ, տալիս էին բարձր արտադրողականության նմուշներ:

Նշանակելիորեն աճեց կոմերիտմիության դերը գյուղում: ՀամԼԿԵՄ 8-րդ համագումարը — կայացած 1928 թ. 5—6-ը մայիսի — իր որոշումներում նշեց, որ կոմերիտական կազմակերպությունների հիմնական խնդիրները գյուղում հանդիսանում են՝ նրանց ակտիվ մասնակցությունը կոլտնտեսային շինարարության մեջ, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման մեջ:

Կոմերիտմիության 8-րդ համագումարին ներկա էին 1084 պատգամավորներ, ներկայացնելով 1.960 հազար մարդ: Այդ համագումարի նշանակությունը ՀամԼԿԵՄ պատմության մեջ հսկայական է: Այդ համագումարին կոմերիտմիության խնդիրների մասին ճառով հանդես եկավ ընկեր Ստալինը: Համագումարին՝ ծավալած կերպով դրված էր սոցիալիստական շինարարության նոր կադրերի ստեղծման հարցը: Ընկեր Ստալինը իր ճառում մատնանշեց.—

«Վորպեսզի կառուցել՝ հարկավոր է գիտենալ, հարկավոր է տիրապետել գիտությանը, իսկ վորպեսզի գիտենալ՝ հարկավոր է սովորել: Սովորել համառորեն, համբերությամբ: Սովորել բոլորից — և թշնամիներից, և բարեկամներից, հատկապես թշնամիներից: Սովորել սեղմելով ատամները, չվախենալով, վոր թշնամիները կծիծաղեն մեզ վրա, մեր կոպտության վրա, մեր հետամնացության վրա: Մեր առաջ ամրոց է կանգնած: Նա, այդ ամրոցը, գիտություն է կոչվում, իմացությունների բազմաթիվ ճյուղերով: Այդ ամրոցը մենք պիտի գրավենք ինչ գնով էլ լինի: Այդ ամրոցը պիտի գրավի յերիտասարդությունը, յեթե նա ցանկանում է նոր կյանքի կառուցողը լինել, յեթե նա ցանկանում է հին գվարդիայի իսկական փոխարինողը դառնալ»[1]:

Այնուհետև ընկեր Ստալինը ընդգծեց.— «Տիրապետել գիտությանը, դարբնել գիտելիքների բոլոր ճյուղերի համար բոլշևիկ-մասնագետների նոր կադրեր, սովորել, սովորել, սովորել ամենահամառ

[1]) В. И. Ленин, И. В. Сталин, «О молодежи», стр. 203. Партиздат. 1936.



կերպով — այսպիսին է այժմ խնդիրը: Հեղափոխական յերիտասարդության արշավանք դեպի գիտությունը— ահա՛ ինչ է մեզ պետք, ընկերներ»[1]:

Հենց նույն, 1928 թվին էլ լրացավ կոմյերիտմիության 10-ամյակը: Կոմյերիտմիությանն ուղղած վողջույնում ընկեր Ստալինը գրել է, վոր լենինյան կոմյերիտմիությունը կար և մնում է պրոլետարական հեղափոխության յերիտասարդ ռեզերվը.—«Բանվորա-գյուղացիական յերիտասարդ սերնդի տասնյակ և հարյուր հազարավոր ներկայացուցիչներ դաստիարակվել են կոմյերիտմիության շարքերում, ստացել են հեղափոխական կոփվածություն և ներյցվել են մեր կուսակցության մեջ, մեր խորհուրդներում, մեր պրոֆմիություններում, մեր Կարմիր բանակում, մեր Կարմիր նավատորմում, մեր կոոպերացիայում, մեր կուլտուրական կազմակերպություններում, հերթափոխելով բոլշևիկների հին գվարդիային: Կոմյերիտմիությանն հաջողվել է այդ դժվարին խնդիրը այն պատճառով, վոր նա իր աշխատանքը-

[1]) В. И. Ленин, И. В. Сталин «О молодежи», стр. 206. Партиздат. 1936.

ները տարել է կուսակցության ղեկավարու-
թյան ներքո...»[1]) :

Ընկեր Ստալինի ցուցումները խորհրդային վողջ յերիտասարդության մարտական ծրագիրն է:



1929 թվին մեր յերկրում պայքար սկսվեց ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի կատարման համար: Սոցիալիզմի ծավալուն հարձակումը քաղաքի և գյուղի կապիտալիստական տարրերի վրա, հանդիպեց դասակարգային թշնամու դաժան դիմադրությանը: Կուսակցությունը վճռական պայքար վարեց, մերկացրեց և փոշիացրեց կապիտալիզմի աջ ռեստավրատորներին, վորոնք այնուհետև միացան յերկրի անարգված տրոցկիստների, ֆաշիստական հետախուզությունների վարձկան գործակալների, լրտեսների, դիվերսանտների և վնասարարների հետ:

Կոմյերիտմիությունը, կուսակցության ղեկավարությամբ ակտիվ մասնակցություն է ունենում ստալինյան հնգամյակի իրագործման մեջ: Կոմյերիտմիության և մամուլի ձեռներեցությամբ յերկրում լայնորեն

1) И. Сталин «О комсомоле», стр. 151—152.



ծավալվում է սոցիալիստական մրցությունը և հարվածայնությունը, կուսակցության 16-րդ կոնֆերենցիան, ի ուշադրություն ԽՍՀՄ-ի բոլոր բանվորների և աշխատավոր գյուղացիների նշեց, վոր «բեկման այս տարում լենինյան կոմյերիտմիության և մամուլի նախաձեռնությամբ սոցիալիստական մրցությունը ավելի ու ավելի յե դառնում հզոր մասսայական շարժում»:

1930 թվին մեր յերկիրը մտավ սոցիալիստական շինարարության նոր ետապը: Կուսակցության 16-րդ համագումարին տված իր զեկուցման մեջ ընկեր Ստալինը ասում եր.—

«Կուսակցության հիմնական դիրքավորումը այստեղ կայանում այն է, վոր սոցիալիզմի տնտեսական ֆրոնտի առանձին ճակատամասերում կատարած հարձակումից անցնենք հարձակման ամբողջ ճակատով թե՛ արդյունաբերության բնագավառում, թե՛ գյուղատնտեսության բնագավառում: 14-րդ համագումարը գերազանցապես ինդուստրացման համագումար եր: 15-րդ համագումարը գերազանցապես կոլեկտիվացման համագումար եր: Սա — ընդհանուր հարձակման նախապատրաս-

տումն էր։ Ի տարբերություն անցած ետապներից — 16-րդ համագումարին նախորդող ժամանակաշրջանը սոցիալիզմի ամբողջ ճակատով ընդհանուր հարձակման անցնելու ժամանակաշրջան է, սոցիալիզմի ուժգին կառուցման, ժամանակաշրջան թե՛ արդյունաբերության բնագավառում, թե՛ գյուղատնտեսության բնագավառում։ 16-րդ համագումարը սոցիալիզմի ամբողջ ճակատով ծավալուն հարձակման անցնելու, կուլակության վորպես դասակարգ վերացնելու և համատարած կոլեկտիվացումը կենսագործելու համագումարն է»[1])

Բոլոր ֆրոնտներում սոցիալիզմի ծավալման հարձակման եպոխայում կոմյերիտմիությունը մեծ դեր է խաղացել։ Յերիտասարդությունը լծվել է գյուղատնտեսության կոլեկտիվացման և կուլակության վորպես դասակարգի վերացման համար պայքարողների առաջին շարքերում։ Այդ պահին հրավիրվեց կոմյերիտմիության IX համագումարը (1931 թ. հունվարի 16—26)։

Կուսակցության ղեկավարությամբ լենինյան կոմյերիտմիությունը ջախջախեց

1) **И. Сталин.** «Вопросы ленинизма», стр. 410. 10 изд.



աջ-ձախ բլոկի դավաճանական փորձերը, վորն առաջ եր քաշում կուսակցության գծի նկատմամբ «կասկածելու իրավունքի» մասին հակահեղափոխական դրույթը և փորձում կոմյերիտմիությունը հակադրել կուսակցությանը։

Միջազգային ու ներքին դրության և կոմյերիտմիության խնդիրների մասին ճառով ՀամԼԿՅԵՄ IX համագումարին հանդես յեկավ Լ. Մ. Կագանովիչը։ Խոսելով սոցիալիստական շինարարության խնդիրների մասին, ընկեր Կագանովիչը մատնանշեց.—

«Մենք պարտավոր ենք ճանաչել մեր ուժը և չկորցնել հավատը դեպի մեր գործի հաջողությունը, բայց հարկավոր է ճանաչել նաև իր թույլ կողմերը, վորպեսզի չանհոգանալ, դափնիների վրա չհանգստանալ, չվարակվել փատալիզմով,— վորպես թե, սոցիալիզմի կառուցումը մեր յերկրում ապահովված է,— չվարակվել ինքնահոսով, այլ բոլշևիկորեն մոբիլիզացիայի յենթարկել բոլոր ուժերը, շարժման և մարտական պատրաստության մեջ դնել բոլոր կազմակերպությունները, բոլոր լծակները, վորպեսզի արագորեն կառա-

րենք դրված խնդիրները, վորպեսզի հետագայում ևս գնանք հաղթանակից հաղթանակ[1]):

IX համագումարի ժամանակ կոմյերիտմիությունը՝ սոցիալիստական մրցման և հարվածայնության գործում նախաձեռնություն հանդես բերելու, առաջին հնգամյա պլանի արագ կատարումն ապահովելու համար պայքարելու համար պարգևատրվեց Աշխատանքային կարմիր Դրոշի շքանշանով:

Վորպես սոցիալիստական մրցության նախաձեռնիկ, կոմյերիտմիությունը լենինյան-ստալինյան ենտուզիազմի հրով բորբոքեց խորհրդային վողջ յերիտասարդությունը, մեր հայրենիքի բոլոր աշխատավորներին: Սոցիալիստական մրցության նոր, բարձրագույն ետապում— ստախանովյան շարժման մեջ — կոմյերիտմիությունը և նրա ղեկավարած յերիտասարդությունը պատվավոր տեղ են գրավում:

ՀամԼԿՅԵՄ IX համագումարը առանձին ուշադրություն նվիրեց ԽՍՀՄ-ի պաշտպանության հարցին: Համագումարը ընդունեց Ռազմա-Ծովային Նավատորմի շեֆությունը:

Կոմյերիտմիությունը հերոսության վառ

1) Стенографический отчет IX с'езда ВЛКСМ, стр. 14.



օրինակներ ցուցաբերեց սոցիալիստական շինարարության բոլոր տեղամասերում— նաև հետևյալ տարիներին: Յերիտասարդությունը հաստատ յուրացնում և մարտականորեն կատարում եր կուսակցության և ընկեր Ստալինի բոլոր կոչերը:

Ընկեր Ստալինը 1933 թվին, հարվածային կոլտնտեսականների համամիութենական առաջին համագումարին արտասանած ճառում ընդգծեց, վոր կոմյերիտմիության խնդիրը կայանում է նրանում, «վորպեսզի սովորել և կրկին սովորել լենինիզմը»: Ընկեր Ստալինն ասաց.—

«Ընկե՛ր կոմյերիտականներ և կոմյերիտուհիներ, սովորեցե՛ք բոլշևիզմը և առաջ տարեք տատանվողներին: Ավելի քիչ շաղակրատեցե՛ք, աշխատեք ավելի և ձեր գործը գլուխ կգա անպայման»[1]):

Կոմյերիտմիությունը ջերմորեն լծվեց, առաջնորդի այս ցուցումները կատարելու և հսկայական աշխատանք կատարեց Լենին-Ստալինի գործին, կոմունիզմին նվիրված յերիտասարդ մարտիկներին դաստիա-

1) В. И. Ленин и И. В. Сталин. «О молодежи» стр. 206. Партиздат 1936.

բակելու ուղղությամբ: 1936 թվին կոմյերիտմիության շարքերում կային արդեն մոտ 4 միլիոն անդամներ:

Խորհրդային ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ստալինյան հնգամյակի տարիներին հիմնականում կառուցեց սոցիալիստական հասարակություն, ստեղծեց հզոր արդյունաբերություն, առաջավոր տեխնիկայով զինեց սոցիալիստական գյուղատնտեսությունը, կոփեց թշնամիների համար ահարկու, անպարտելի Կարմիր Բանակի ուժը և պանծալի Ռազմա-Ծովային Նավատորմը:

Կոմյերիտմիության առաջ ծառացավ նոր և ավելի բարդ խնդիր— յերիտասարդ կադրերի դաստիարակությունը: X համագումարին ընկ. Կոսարևը մատնանշեց.—

«Կոմյերիտմիության կենտրոնական խնդիրը ներկայումս հանդիսանում ե վոչ միայն խորհրդային իշխանության նվիրված կադրերի դաստիարակությունը, այլև գրագետ, կրթված, տեխնիկապես պատրաստված, իրենց գործի մասնագետների՝ վորոնք կարող են



միացնել հեղափոխական թափը բոլշևիկյան գործնականության հետ»[1]):

Վորպեսզի ավարտված կառուցել կոմունիստական հասարակությունը, հարկավոր ե լուրջ կերպով կազմակերպել յերիտասարդության ուսուցումը, առանց սնապարծության և պարծենկոտության համառորեն սովորել գիտությունը, ձեռք բերել կրթություն և կուլտուրականություն: Մեր կոմյերիտմիությունն արագորեն հաղթահարում ե այդ խնդիրները: 1936 թվի ապրիլին Համ. ԼԿՅԵՄ X համագումարն ընդունեց նոր ծրագիր, վորը ձևակերպում ե ՀամԼԿՅԵՄ եությունն ու դերը.—

«Համամիութենական Լենինյան Կոմունիստական Յերիտասարդական Միությունը հանդիսանում ե ՀամԿ(բ)Կ-ին հարող մասսայական անկուսակցական կազմակերպություն. իր շարքերում միացնում ե քաղաքի և գյուղի առաջավոր, քաղաքականապես գրագետ աշխատավոր յերիտասարդության լայն խավերը: ՀամԼԿՅԵՄ-ի խնդիրն է

1) **А. Косарев.** Отчет ЦК ВЛКСМ X всесоюзному с'езду ленинского комсомола. Стр. 41. Партиздат. 1936.

ոգնել կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությանը՝ յերիտասարդության ու յերեխաների կոմունիզմի վոգով դաստիարակելու գործում: ՀամԼԿՅԵ Միությունը, համակրելով ՀամԿ(բ)Կ-ի ծրագրին, ոգնում է բոլշևիկների կուսակցությանը և խորհրդային կառավարությանը՝ կատարելու պատմական մեծ խնդիրը՝ կոմունիստական հասարակության կառուցումը:

ՀամԼԿՅԵՄ-ը հանդիսանում է ՀամԿ(բ)Կ-ի ոգնականն ու ռեզերվը»[1]):

Յերիտասարդության կոմունիստական դաստիարակության և կոմյերիտմիության խնդիրների մասին զեկուցմամբ համագումարին հանդես յեկավ ՀամԿ(բ)Կ կենտկոմի քարտուղար ընկեր Ա. Ա. Անդրեևը: Նրա զեկուցման մեջ, ՀամԼԿՅԵՄ-ի առաջ դրվեցին մի շարք կարևորագույն խնդիրներ, վորոնց կատարման համար կոմյերիտմիությունը պարտավոր է աշխատել:

***

Իր փառապանծ 20-ամյակին կոմյերիտմիությունը գալիս է զինված՝ սոցիալիզմի

[1]) «Программа и устав ВЛКСМ», стр. 19—20. «Молодая гвардия». 1938 г.



համար, խորհրդային յերիտասարդության կոմունիստական դաստիարակության համար մղած պայքարի վիթխարի փորձով: Կուսակցության ոգնությամբ կոմյերիտմիությունը մեծ աշխատանք է կատարել իր շարքերը ֆաշիզմի տրոցկիստական-բուխարինյան և բուրժուա-նացիոնալիստական գործակալներից, լրտեսներից և դիվերսանտներից մաքրելու ուղղությամբ:

Լենինյան-ստալինյան կոմյերիտմիության նշանավոր տարեդարձը — այդ խորհրդային ամբողջ ժողովրդի բերկրալի տոնն է: Խորհրդային յերկրի ազգաբնակչության զգալի մասը կազմում է յերիտասարդությունը: ԽՍՀՄ-ում հաշվվում է կոմյերիտական հասակի տասնյակ միլիոնավոր պատանիներ և աղջիկներ: Կոմյերիտմիությունը — խորհրդային առաջավոր յերիտասարդության կազմակերպությունն է: Կոմյերիտմիությունը պարտավոր է դաստիարակել սոցիալիզմի յերիտասարդ կառուցողներին այդ սքանչելի բանակը:

«Մեր ամենագլխավոր խնդիրն է, — ասում էր ընկ. Կոսարևը, — յերիտասարդ աշխատավորականների խորհրդակցությունը, — յերիտասարդ սերունդից

դաստիարակել լենինյան տիպի հասարակական գործիչներ, մարդիկ, որոնց մասին ասաց ընկեր Ստալինը Ստալինյան օկրուգի ընտրողների առաջ արտասանած իր ճառում: Այդ— լենինյան— ստալինյան տիպի մարդիկ են, մարդիկ, որոնք զանազանվում են մարտի մեջ անվեհերությամբ և դեպի ժողովրդի թշնամիները՝ անողոքությամբ, մարդիկ, որոնք ազատ են ամեն տեսակի խուճապներից դժվարին րոպեներին, մարդիկ, որոնք կարողանում են բազմակողմանի և լրջորեն հաշվառել հանգամանքները, մարդիկ, որոնք զանազանվում են ճշմարտասիրությամբ և ազնվությամբ, անձնվիրաբար սիրում են իրենց ժողովուրդը: Եթե մենք դաստիարակենք այդպիսի մարդիկ, լենինյան— ստալինյան տիպի մարդիկ, այն ժամանակ մենք արագորեն կկատարենք մեր բոլոր խնդիրները»[1]):

Մեր խորհրդային երիտասարդությունը անսահմանորեն նվիրված է բոլշևիկյան կու—

1) **А. Косарев** «О задачах комсомола в стахановском движении», стр. 22. 1938 г.



սակցությանը և սիրելի բարեկամ ու ուսուցիչ ընկեր Ստալինին: Հաղթանակած սոցիալիզմի Ստալինյան Սահմանադրությունը սոցիալիստական հայրենիքի աշխատավոր երիտասարդությանը տվեց աշխատանքի, հանգստի և կրթության իրավունք: Խորհրդային երիտասարդությունը պաշտպանելով յուր հայրենիքը թշնամու ամեն տեսակ վտանգություններից, պատրաստ է միշտ հիշել ընկեր Ստալինի ցուցումը պատերազմական վտանգի սպառնալիքի մասին: Կոմյերիտական Իվանովի նամակին գրած պատասխանում ընկեր Ստալինը գրում է.

«Հարկավոր է ամեն կերպ ուժեղացնել ու ամրապնդել մեր Կարմիր բանակը, Կարմիր Նավատորմը, Կարմիր ավիացիան, Պաշը–Ավիաքիմը: Հարկավոր է մեր ամբողջ ժողովուրդը պահել մոբիլիզացիոն պատրաստականության վիճակում՝ ռազմական հարձակման վտանգի դեմ–հանդիման, որպեսզի ոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների ոչ մի ֆոկուս չկարողանա մեզ հանկարծակիի բերել...»:

Յուրաքանչյուր կոմյերիտականի անհրա—

ժեշտ է հիշել և իրագործել ՀամԼԿՅԵՄ-ի կանոնադրությունը, որը պարտավորեցնում է կոմերիտմիության անդամներին «ուսումնասիրել ռազմական գործը, անձնազոհ կերպով նվիրված լինել սոցիալիստական մեծ հայրենիքին և պատրաստ լինի տալու նրան իր բոլոր ուժերը, իսկ եթե անհրաժեշտ լինի— նաև կյանքը»:

Կուսակցական բոլոր կազմակերպությունների խնդիրը այն է, որպեսզի օգնեն կոմերիտական կազմակերպություններին—ձեռք բերելու է՛լ ավելի մեծ հաղթանակներ նրա 20-ամյա հոբելյանի օրը:



# ՕՐԻՆԱԿԵԼԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ

## ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ՅԵՎ ՆՐԱ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Հանրագումարի բերելով ժուռնալի էջերում կատարված քննարկության արդյունքները՝ «Ագիտկոլեկտիվի կազմակերպման և նրա աշխատանքների մասին օրինակելի կանոնադրության» առթիվ, «Спутник агитатора»-ի խմբագրությունը ագիտկոլեկտիվներին օգնելու համար տպագրում է «օրինակելի կանոնադրության» մշակված և լրացված տեքստը:

«Կանոնադրությունը» մշակելիս «Спутник агитатора»-ի խմբագրությունը՝ ՀամԿ(բ)Կ Մոսկվայի քաղաքային կոմիտեի կուսպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հետ մասնակից է դարձրել նաև Մոսկվայի րա-

վողույն ագիտատորներին և ագիտկոլեկտիվների ղեկավարներին: Բացի դրանից հաշվի յն առնված ագիտատորների և կուսակցական աշխատողների կողմից ժուռնալին ուղարկած առաջադրությունները:

I

Բոլշևիկյան ագիտացիան հզոր զենք է հանդիսանում կուսակցության ձեռքում: Բոլշևիկյան ագիտացիայի ուժը նրա ճշմարտացիության, պարզության, բարձր գաղափարականության, աշխատավոր մասսաների վրա ունեցած հրակայական ներգործության մեջ է: Բոլշևիկյան ագիտացիան՝ կուսակցության կապը մասսաների հետ անընդհատ ամրացնելու և բազմապատկելու մի միջոց է:

Բոլշևիկյան ագիտացիան լայնորեն ծավալելու օրինակ հանդիսացան՝ ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի և միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների ընտրական կամպանիաները:

Բոլշևիկյան ագիտացիան կոչված է պարզաբանելու մասսաներին մեր կոմունիստական կուսակցության և խորհրդային կառավարության քաղաքականությունը, մոբիլ-



զացիայի ենթարկելու աշխատավորներին սոցիալիստական շինարարության պլանները կատարելու գործում, օժանդակելու ստախանովական շարժման մասսայական ծավալմանը, պարզաբանելու ԽՍՀՄ-ի միջազգային դրությունը, աջակցելու ԽՍՀՄ-ի պաշտպանության ամրացմանը: Մեր ագիտացիան պետք է մասսաներին դաստիարակի ինտերնացիոնալ վոգով, աշխատավորների մեջ դաստիարակի խորհրդային հայրենասիրություն, հեղափոխական զգոնություն, մասսաներին մոբիլիզացիայի ենթարկի արմատախիլ անելու և վերջնականապես վոչընչացնելու ֆաշիզմի տրոցկիստական-բուխարինյան, բուրժուա—նացիոնալիստական ու ագենտների մնացորդներին, մասսաների մեջ դաստիարակի սեր և նվիրվածություն՝ դեպի սոցիալիստական հայրենիքը, խորհրդային կառավարությունը, Լենինի-Ստալինի կուսակցությունը, օժանդակի բոլշևիկյան կուսակցության աճմանը՝ վոչ կուսակցական բոլշևիկների հաշվին, օժանդակի՝ անկուսակցական յերիտասարդության կոմյերիտմիության մեջ ներգրավելուն:

Ագիտացիոն աշխատանքն անցկացնելիս պետք է յելնել այն ցուցումից, վորը տվել է

ընկեր Ստալինը կոմյերիտական պրոպագանդիստ ընկ. Իվանովի նամակի պատասխանում,— «Հարկավոր է մեր ամբողջ ժողովուրդը պահել մոբիլիզացիոն պատրաստականության վիճակում՝ ռազմական հարձակման դեմ-հանդիման, որպեսզի ոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների ոչ մի ֆոկուս չկարողանան մեզ հանկարծակիի բերել...»:

Բոլշևիկյան ագիտացիայի հիմնական մեթոդը՝ համառ խոր և համբերատար կերպով պարզաբանելն ու համոզելն է: Ագիտացիոն աշխատանքում ոչ թե վարչարարություն անել, այլ համոզել: Ագիտատորը պետք է միշտ հաշվի առնի, թե մարդկանց ինչպիսի կազմի հետ է վիճակվում նրան աշխատել: Աշխատանքի պրոցեսում նա պետք է ծանոթանա իր ունկնդիրների հետ:

«Պետք է սովորել մոտենալ մասսաներին առանձնապես համբերատարությամբ և զգուշությամբ, որպեսզի կարողանալ հասկանալ այդ մասսայի յուրաքանչյուր խավի, պրոֆեսիայի և այլն՝ առանձնահատկությունն ու հոգեբանության յուրահատուկ գծերը» (Լենին):

Բոլշևիկյան կուսակցությունը՝ կուսակ-



ցական և ոչ կուսակցական բոլշևիկներից աճեցրել է հարյուր հազարավոր ագիտատորներ: Յուրաքանչյուր ագիտատորի ամենակարևոր պարտականությունն է տիրապետել բոլշևիզմը, անդադրում բարձրացնել իր քաղաքական ու կուլտուրական մակարդակը, ամեն օր ընթերցել թերթեր, ժուռնալներ, ագիտացիոն գրականություն:

II

1. Ագիտատորների կոլեկտիվը կազմակերպվում է արդյունաբերական և տրանսպորտային ձեռնարկության, կոլտնտեսության, Մ.Տ.Կ.-ի, խորհտնտեսության և հիմնարկի կուսակցական կոմիտեյին կից: Գյուղական այն վայրերում, որտեղ կուսկազմակերպություններ չկան, ագիտկոլեկտիվները կազմակերպում և ղեկավարում է անմիջապես Համ.Կ(բ)Կ. շրջկոմը:

Կուսակցական կոմիտեն ագիտատորների կադրերն ընտրում է լավագույն կուսակցականներից, կոմյերիտականներից, համակրողներից, ստախանովականներից ու հարվածայիններից, քաղաքականապես գրագետ կուսակցական և ոչ կուսակցական բոլշևիկներից, որոնք կարողանում են պաշտպանել կոմունիստական կուսակցության գործը,

կարողանում են պարզ ու հասարակ լեզվով բացատրել մասսաներին կուսակցության քաղաքականությունն ու աշխատավորներին հետաքրքրող հարցերը, զարթեցնել ու բարձրացնել նրանց սոցիալիստական յեռանդն ու նախաձեռնությունը:

2. Ագիտատորների պետական կազմը քննարկում և հաստատում է կուսակցական կոմիտեն. իսկ այնտեղ, ուր չկա կուսակցական կոմիտե — Համ. Կ (բ) Կ շրջկոմը: Հաստատված բոլոր ագիտատորները մտցըվում են ագիտկոլեկտիվի կազմի մեջ:

3. Խոշոր ձեռնարկություններում, վորտեղ կան ցեխային կուսակցական կոմիտեներ, ագիտատորների համագործարանային կոլեկտիվին զուգընթաց կազմակերպվում են ագիտկոլեկտիվներ ցեխային կուսակցական կոմիտեներին կից: Այնտեղ, ուր այդ նպատակահարմար է, ագիտկոլեկտիվներ կազմակերպվում են ըստ հերթափոխումների:

4. Այն ձեռնարկների ու հիմնարկների համար, վորոնք քիչ քանակությամբ ագիտատորներ ունեն, կազմակերպվում են միջնային ագիտկոլեկտիվներ՝ Համ. Կ. (բ) Կ. շրջկոմին կից:

5. Այն ագիտատորների համար, վորոնք



աշխատում են բնակչության մեջ ըստ իրենց բնակավայրի, կարող են կազմակերպվել ագիտ-կոլեկտիվ ամենից ավելի խոշոր այն ձեռնարկության կուսակցական կոմիտեյին կից, վորը քաղաքական աշխատանքի համար ամրացված է բնակչության այդ խմբին:

6. Ֆաբրիկի, գործարանի կոլտնտեսության, Մ. Տ. Կ.-ի հիմնարկության ագիտկոլեկտիվը ղեկավարում է կուսակցական կոմիտեյի քարտուղարը: Հերթափոխային և Համ. Կ. (բ) Կ. շրջկոմին կից կազմակերպված ագիտկոլեկտիվների ղեկավարներ են ընտրվում ստուգված բոլշևիկները՝ կուսակազմակերպության ղեկավար ակտիվի կազմից: Ագիտկոլեկտիվների ղեկավարներին հաստատում են Համ. Կ. (բ) Կ. շրջանային կոմիտեները, իսկ այն կազմակերպություններում, վորոնց ղեկավարում են քաղբաժինները, հաստատում են համապատասխան քաղբաժինները:

7. Ագիտկոլեկտիվներն աշխատում են պլանով, վորը հաստատում է կուսկոմիտեն: Պլանում պետք է նախատեսված լինի ագիտատորների, զրուցող-ընթերցողների պատրաստումը՝ ըստ բովանդակության ղեկուցումներ, զրույցներ, ընթերցանություններ

անցկացնելու և ագիտացիոն աշխատանքի մեթոդներն ու ձևերը կիրառելու համար: Պլանում հարկավոր է նախատեսնել՝ կուսակցության և կառավարության կարևորագույն վորոշումների, ԽՍՀՄ-ի միջազգային դրության, մասսայական-քաղաքական կամպանիաների ամենօրյա ու սիստեմատիկ պարզաբանումը, ստախանովյան շարժման, հակակրոնական պրոպագանդայի հարցերի պարզաբանումը, օտարերկրյա հետախուզական մարմինների լըրտեսական գործողությունների պրիոմների ու մեթոդների հետ բնակչությանը ծանոթացնելը, աշխատավորներին հետաքրքրող հարցերի պարզաբանումը: Ագիտկոլեկտիվի ժողովները (պարապմունքները) անցկացվում են մոտավորապես դեկադում մեկ անգամ: Աշխատավորների մեջ շատ բացատրական աշխատանք կատարելու անհրաժեշտության դեպքում հրավիրվում է ագիտկոլեկտիվի արտակարգ ժողով՝ ագիտատորներին հրահանգավորելու համար:

8. Համ. Կ. (բ) Կ. քաղաքային, շրջանային և գործարանային կոմիտեները կանոնավոր կերպով անցկացնում են ագիտկոլեկտիվների ղեկավարների խորհրդակցում՝ ոչ ուշ քան ամսական յերկու անգամ:



9. Պարբերաբար անցկացվում են ագիտատորների քաղաքային, շրջանային, համագործարանային խորհրդակցություններ, ագիտացիոն աշխատանքի ամենից ավելի կարևոր հարցերի կապակցությամբ:

10. Ագիտատորները պետք է առանձնապես մեծ ուշադրություն նվիրեն այն հարցերին, վորոնք առաջանում են աշխատավորների կողմից: Այդ հարցերի մասին ագիտատորները պետք է տեղեկացնեն ցեխի կուսկազմակերպչին, կուսկոմիտեյի քարտուղարին և ագիտկոլեկտիվի ղեկավարին, վորոնք ագիտատորներին պետք է տան սպառիչ հրահանգչական ցուցումներ՝ դրված հարցերին պատասխանելու համար:

11. Ագիտկոլեկտիվում ագիտատորն ստանում է ոգնություն՝ պլաններ և կոնսպեկտներ, զրույցներ ու դեկուցումներ կազմելու, գրքի, թերթի, քարտեզի, գեղարվեստական յերկերի վրա աշխատելու համար, ցուցադրական պիտույքներից ոգտվելու համար:

12. Ագիտատորները պահում են իրենց աշխատանքի որագիրն ու այն հարցերի հաշվառումը, վորոնք հետաքրքրում են աշխատավորներին:

13. Ագիտկոլեկտիվի ժողովում՝ ամենից ավելի փորձված ագիտատորներից ընտրվում է ագիտկոլեկտիվի ավագ, որը վարում է ագիտկոլեկտիվի աշխատանքի հաշվառումը և օգնում է ղեկավարին ագիտատորների հետ ամենօրյա կապ պահպանելու գործում:

14. Կուսկաբինետներն ագիտատորների հետ անցկացնում են խմբակային ու անհատական կոնսուլտացիաներ, կազմակերպում են ամենօրյա օգնություն ագիտատորների համար՝ գրականություն, քարտեզ, դիագրամաներ ընտրելու և նկարների, պատեֆոնի պլաստինկաների ու թերթերի կտրվածքների ռեպրոդուկցիայի գործում: Կուսկաբինետն ագիտատորների համար ընտրում է տեղական նյութեր՝ ըստ հանրապետության, երկրի, մարզի, քաղաքի, շրջանի, ձեռնարկության, ցեխի, կոլտնտեսության, խորհտնտեսության և այլն:

Կուսկաբինետն ագիտատորների համար կազմակերպում է հատուկ դասախոսություններ ու զրույցներ, կախ է տալիս գրականության ցուցակը և կազմակերպում է ըստ թեմաների հանձնարարվող գրականության ցուցադրումը:



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՋԻՆ ԲԱՌԵՐԻ ՑԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

Հալիֆաքս՝ լորդ (ծնվել է 1881 թվին), — անգլիական արտաքին գործերի մինիստր: Խոշոր հողատեր, ազգակցական հարաբերությամբ կապված է անգլիայի ամբողջ հողատիրական ազնվականության հետ, որի շնորհիվ դարձել է աչքի ընկնող դեմք՝ պահպանողական կուսակցության մեջ: 1922—24 թվերին եղել է լուսավորության մինիստր, ապա՝ գյուղատնտեսության մինիստր, 1926-ից 1936 թ. Հնդկաստանի փոխ-արքա: Այստեղ նա «փառաբանվեց» պահպանողականների աչքում իր «նուրբ դիվանագիտությամբ»: Նա անցկացրեց Հնդկաստանի հետագա ստրկացման իմպերիալիստական ամենառեակցիոն քաղաքականությունը: Հենվելով ֆեոդալների (իշխանների) վրա, նա գրգռում էր մուսուլմաններին ու հնդիկներին մեկը մյուսի դեմ, կազմակերպում էր Հնդկաստանի հեղափոխական մարտիկների մասսայական ձերբակալություններ ու բանտարկություններ:

Վերադառնալով Հնդկաստանից, Հալիֆաքսը դարձյալ մտավ կառավարության կազմի մեջ: 1932-ից 1935 թ. նա յեղավ լուսավորության մինիստր և զինվորական մինիստր: 1935 թվին նա ժառանգեց հոր տեղը լորդերի պալատում, մնալով կառավարության անդամ՝ կնիքապահ լորդի պաշտոնում:

Հալիֆաքսն ամբողջ ժամանակ մեծ ազդեցություն է ունեցել անգլիական արտաքին քաղաքականության վրա, դրդելով նրան (Անգլիային) դեպի ագրեսորների հետ համաձայնության գալու ուղին: 1937 թվին նա մեկնեց բանակցելու Հիտլերի հետ, և այն ժամանակից ի վեր հետևողականորեն ֆաշիստական յերկրներին մոտենալու կուրս է վերցրել, զիջումներ անելով նրանց բոլոր պահանջների հանդեպ և այդպիսով նպաստելով նոր համաշխարհային պատերազմի առաջացմանը:

Դեմարկացիա— Սահմանազատում, սահմանային նշանների տեղավորում (այդպիսի նշաններին են պատկանում նաև բնական նշանները՝ գետերը, լեռները) միջազգային պայմանագրերի հիման վրա, վորոնք վորոշում են յերկու պետությունների միջև յե-



գած սահմանները: Դեմարկացիան կատարում են շահագրգռված պետությունների ներկայացուցիչներից կազմված խառն հանձնաժողովները:

Դենոնսացիա (կամ ծանուցում) — կնքված միջազգային պայմանագրի վերացումը՝ մինչև նրա ժամկետի լրանալը (հայտարարել նրան, իբրև ուժը կորցրած) կամ հրաժարվել նրա գործողության ժամկետը յերկարացնելուց: Դենոնսացիան կատարվում է կամ կողմերի փոխադարձ համաձայնությամբ կամ յուրաքանչյուր կողմի՝ պայմանագրով կանխորոշված, այն իրավունքի հիման վրա, վորով կողմերից մեկը նախապես, վորոշ ժամկետից հետո, հայտարարում է պայմանագիրը չեղյալ համարելու մասին:

Դիվերսիա— 1) ռազմական մանյովր, վորը գործադրվում է հեռու այն վայրից, վորտեղ գործում են գլխավոր ուժերը, վորպեսզի ներգրավեն հակառակորդի ուժերը և այդպիսով հեշտացնեն իրենց զորքերի գործողությունը՝ կատարելու համար առաջադրված խնդիրները վճռական մարտի ճակատամարտում: 2) Գաղտնի կազմակերպությունների, խմբակցությունների կամ ա-

ռանձին անձնավորությունների գործողություններ, որոնք նպատակ են դնում՝ պայթեցնել երկրի ռազմական և տնտեսական կարողությունը, խանգարել երկրի քաղաքական, տնտեսական, ռազմական միջոցառումների իրագործմանը՝ ինչպես խաղաղ, նույնպես և պատերազմի ժամանակ: Դիվերսիաներ են համարվում հրկիզումներ և պայթեցումներ կազմակերպելը, ձեռնարկությունների և արդյունաբերական կառուցումների և տրանսպորտի խորտակումների կազմակերպումը, անասունների ու ցանքերի ոչնչացումը, մասսայական թունավորումները և այլն: Ֆաշիստական հետախուզությունները առանձնապես մեծ ջանք են գործադրում կազմակերպելու դիվերսիոն աշխատանք ԽՍՀՄ-ի տերիտորիայում: Ֆաշիստական հետախուզությունների դիվերսիոն աշխատանքի մեջ՝ մեր տերիտորիայի վրա, մի կեղտոտ կծիկի մեջ հյուսվեցին լիկվիդացիայի ենթարկված շահագործող դասակարգերի մնացորդներից կազմված հակահեղափոխական տարրերը, պրոֆեսիոնալ լրտեսները, տրոցկիստներ—բուխարինականները, որոնք վերածվեցին վնասարարների, դիվերսանտների, լրտեսների ու մարդա-



սպանների մի լկտի ու անսկզբունք բանդայի և գործում էին օտարերկրյա պետությունների հետախուզիչ մարմինների առաջադրանքներով: Դիվերսանտ— այսպես է կոչվում այն անձնավորությունը, որը դիվերսիոն ակտեր է կատարում:

Միմյանց վրա չհարձակվելու պայմանագիր—Խորհրդային միության կողմից խաղաղության համար մղվող պայքարի միջոցներից մեկը: Այդպիսի պայմանագիրն իր մեջ պարունակում է կողմերի հրաժարումը պատերազմից և ամեն տեսակի այլ թշնամական գործողություններից: ԽՍՀՄ-ի կողմից միմյանց վրա չհարձակվելու պայմանագիր է կնքված Աֆղանստանի հետ, Իտալիայի, Իրանի, Չինաստանի, Լատվիայի, Լիտվայի, Լեհաստանի, Թյուրքիայի, Ֆինլանդիայի, Ֆրանսիայի, Չեխոսլովակիայի և Եստոնիայի հետ: Չնայած խորհրդային կառավարության բազմիցս առաջարկներին, Ճապոնիան համառ կերպով խուսափում է չհարձակվելու պայմանագիր կնքելուց. հենց դրանով իսկ, ինչպես նաև մեր սահմանների վրա կատարած պրովոկացիոն գործողություններով, նա հաստատում է ԽՍՀՄ-ի դեմ մղելիք պատե-

*րազմի իր ունեցած պլանների առկայությունը:*

Ինսպերացիա—*ներշնչում, դրդում, գըրգըռում ինսպիրիրովատ — ներշնչել, դըրդել, գրգռել դեպի վորևէ գործողության կատարումը:*

Տանակայի մեմորանդում (Տանակայի *հուշագիր), այդպես է կոչվում ճապոնական իմպերիալիզմի հարձակողական պատերազմի ծրագիրը, վորը շարադրել է ճապոնիայի պրեմյեր—մինիստր գեներալ Տանական 1927 թ. հուլիսի 25-ին ճապոնական կայսրին հասցեագրած իր զեկուցագրում: Ծրագիրը նախատեսում եր Մանջուրիայի և ներքին ու արտաքին Մոնղոլիայի (Մոնղոլական Ժողովրդական Հանրապետություն) գրավումը, պատերազմ ԽՍՀՄ-ի դեմ և Պրիմորիայի, Անդրբայկալի, Արևելյան Սիբիրի գրավումը, պատերազմ ԱՄՆ-ի, Անգլիայի և ուրիշ յերկրների դեմ: Քանի վոր այդ ծրագրի հրապարակումը առաջացրեց բողոք Չինաստանի կողմից և անհանգստություն մյուս պետություններում, ապա Տանակայի մեմորանդումը ճապոնիան հայտարարեց մտացածին բան: Սակայն՝ Մանջուրիայի գրավումը, անընդհատ հակախոր-*



*հըրդային պրովոկացիաները, պատերազմը Չինաստանի դեմ, վորն սկսել է ճապոնիան 1937 թվին, ցույց տվին, վոր Տանակայի մեմորանդումն իրոք հանդիսանում է ճապոնական զինվորականության իսկական ծրագիրը:*

Պարաֆիրովանիյե — *միջազգային պայմանագրերի վերջնական համաձայնեցում այն անձնավորությունների միջև, վորոնք վարում են բանակցությունները: Այդ անձնավորությունները, նախնական կարգով պայմանագրում դնում են իրենց ինիցիալները (սկզբնագրեր) կամ այլ նշաններ, վորոնցով վավերացնում են պայմանագրերը: Այդ դրությամբ պայմանագիրն ուղարկվում է միմյանց հետ պայմանավորվող յերկրների իշխանության գերագույն մարմինների հաստատելու համար:*

Ռատիֆիկացիա. — *միջազգային պայմանագրի հաստատումը պայմանավորվող կողմերի իշխանության գերագույն մարմինների կողմից: Ռատիֆիկացիան կատարվում է՝ պետությունների ներկայացուցիչների կողմից պայմանագիրը ստորագրելուց հետո և նրան վերջնական ուժ է տալիս: Ռատիֆիկացիայի յենթակա յեն՝ քաղաքական բնույ-*

թե կարևորագույն պայմանագրերը, օրինակ՝ խաղաղության վերաբերյալ, միմյանց վրա չհարձակվելու վերաբերյալ և այլ պայմանագրերը, կամ առավել կարևոր տնտեսական բնույթի պայմանագրերը: Բուրժուական յերկրներում ռատիֆիկացիայի իրավունքը պատկանում է պետության գլուխ կանգնած անձնավորությանը (մասնավորապես հանրապետական իրավակարգ ունեցող յերկրներում՝ օրինակ, ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, այդպիսի անձնավորությունը համդիսանում է պրեզիդենտը — նախագահը): ԽՍՀՄ-ում, Սահմանադրության 49-րդ հոդվածի համաձայն, միջազգային պայմանագրերի ռատիֆիկացիան կատարում է ԽՍՀ Միության Գերագույն Խորհրդի նախագահությունը:



## ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Պատ. խմբ. տեղակալ՝ ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Սրբագրիչ Ա. ԲԱՐՍԵՂՅԱՆ



Գլավլիտի լիազոր Ա— 4064
Ստորագրված է տպագրության
16 հոկտեմբերի, 1938 թ.
Պատվեր № 658 Տիրաժ՝ 6906:

---

«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ
ԵՐԵՎԱՆ